„HANDES AMSORYA", MONATSSCHRIFT FÜR ARMENISCHE PHILOLOGIE

# ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ

1927
Թիւ 3—4
ՄԱՐՏ—ԱՊՐԻԼ
ՔԱՌԱՍՆՈՒՄԷԿԵՐՈՐԴ ՏԱՐԻ





ՎԻԵՆՆԱ, ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

Վերոյիշեալ հանգամանքները ի նկատի առնելով, ես հաւանական եմ համարում, որ մեր մեծ հայրենասէր Խաչատուր Աբովեանը 1848 թուին աքսորուած է եղել Սիբիր եւ որի գերեզմանը գտնւում է Հեռաւոր Արեւելքի Ախոտսկ քաղաքում:

ՌՈՒԲԷՆ Ծ. ՎԱՐԴԱՊԵՏ ՄԱՆԱՍԵԱՆ

Էջմիածին:



# ԲԱՆԱՍԻՐԱԿԱՆ

## ԿԱՐԻՆԻ ՄԱՍԻՆ

(Գ. ՖՆՏԳԼԵԱՆԻ ՆԿԱՏՈՂՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԱՌԹԻՒ)

### Ա.

Անկարող ստանալ ներկայումս եւ կանոնաւորապէս հետեւել ՀԱի, նորերս միայն հնարաւորութիւն ունեցայ թերթելու տարուայ թիւերը եւ ի միջի այլոց ծանօթացայ Գ. Ֆնտգլեանի գրութեան (ՀԱ, 1926, թ. 5—6):

Աւելորդ չեմ համարում նախ քանի մի խօսք ասել յարգելի պարոնի այն յայտարարութեան առթիւ թէ Մաշթոց անուան ստուգաբանութիւնը առաջարկել է ինքը տարիներ յառաջ դեռ 1905 թուին եւ ուրեմն առաջնութեան պատիւն իրեն է պատկանում:

Ցաւում եմ, որ պարոնի ակնարկած ուսումնասիրութեան ցայժմ անգէտ մնալով, ակամայից անհաճութիւն եմ պատճառել ոչ միայն նրան, այլ եւ ինձ, որովհետեւ անգիտութիւնն այսպիսի դէպքերում անախորժ է ամէնից յառաջ անտեղեակ բանասէրին, բայց աւելի եւս ցաւում եմ, որ պատուական պարոնը իր առաջնութիւնը պաշտպանելով չէ կարողացել մնալ վայելչութեան սահմանների մէջ:

Գ. Ֆնտգլեան իրեն ներելի է համարում՝ կրկնել յիշողութիւնս եւ այնտեղից վեր հանել իր գիւտի «վերյիշումը» այն հիմամբ, որ նուաստս ստանում էր «Անահիտ» հանդէսը, ինչպէս նեղութիւն է քաշել ստուգելու եւ հետեւապէս հետեւում իր գիտական աշխատանքներին, եւ ապացուցող կէտ է համարում, որ ես բերում եմ նոյն երկու օրինակները Տիրոց եւ Բաքոց «նոյնութեամբ ոչ աւել եւ ոչ պակաս»:

Ասել է թէ 1905 թուին բախտ եմ ունեցել կարդալու Գ. Ֆնտգլեանի ուսումնասիրութիւնը, պահել եմ յիշողութեանս ծալքերում նրա գիւտը, որպէս զի 1926 թուին հիշակեմ եւ որ վշտալին է կորցեմ պարոնի փառքը: Ապացոյց է համարում պարոնը օրինակների զուգադիպումը: Կարծեմ, հայ բանասէրին, անգամ ամենախոնարհին յայտնի պիտի լինի, որ հայոց մատենագրութեան մէջ ուրիշ անուն չկայ -ոց վերջաւորութեամբ, բացի երկուսից Տիրոց եւ Բաքոց: Զլիշել այս, նշանակում է անբարեմիտ լինել եւ անտեղեակ ընթերցողին մոլորեցնել: Երկու իշխանական անուններն էլ ծանօթ են ամէն մի դպրոցականի Վարդանանց եւ Վահանանց պատմութիւնից եւ հազիւ թէ պէտք կայ ուսանելու Գ. Ֆնտգլեանից: Այս միեւնոյն է, եթէ մի քերական յաւակնէր, որ միւսներն իրենից են քաղել, ասենք, փլուզանեմ եւ կորուսանեմ եւ կամ նման օրինակները:

### Բ.

Այս ակամայ տողերից յետոյ դառնանք խնդրի էութեան, որ աւելի կարեւոր է, եւ կը տեսնենք, որ զուգադիպումն խսկ լոկ ձեւական է:

Գ. Ֆնտգլեան իր ասելով համեմատել է Մաշթոց Մազդակի հետ, որովհետեւ mazd փոխւում է mašt-ի ինչպէս yazd-ը՝ yašt-ի: Եթէ այս է նրա հիմը, համեմատութիւնը սխալ է:

Պարսկերէն yazd- երբեք չի կարող փոխուել yašt-ի: Առաջինը ծագում է yazata ձեւից, որ է ապառնի դերբայ կրաւորականի, իսկ yašt է անցեալ դերբայ կրաւորականի yaz-բայից: Երկուսն էլ արմատակից են, բայց հնչական փոխանցման կապ չկայ մէջտեղ:

Ուրիշ է ծագումով եւ կազմով mazd-ը <mand-dha, առաջինը՝ $ma^{n}d$- նոյն է յուն. μανθ-εῖν, սլաւոն. мудр, երկրորդը՝ dha- ‘դնել’ արմատը: d փոխւում է z յաջորդ dh-ից յառաջ եւ այս փոփոխութիւնն այլ կարգի է քան յազդ եւ յաշտ եւ mazd- անցնել mašt-ի չէ կարող:

Ինչ վերաբերում է մեր համեմատութեան, ելակէտս եւ մերձաւոր առիթը

Մաժդ-ոց ընթերցումն է, որ յիշեցնում է անմիջապէս Մազդ- բառը առանց որ եւ է ճիգի: «Գիրք Թղթոց» պահել է եւ Մաժդ-ոց ձեւը: Միւս յիշատակարաններում ընդունուած ընթերցումն է Մաշտ-ոց եւ Մաշբ-ոց: Ստուգաբանական փորձերից յառաջ պէտք է բանասիրական ճշդումն տարբեր գրչութեանց փոխարդարձ յարաբերութեան: Նայելով թէ որ ձեւը կը համարուի հնագոյն ըստ այնմ եւ ուղղելու է ստուգաբանական որոնումները:

Սկզբնական ձեւը թւում է թէ Մաժդոց է, որ գտնում ենք Պրոկլի Թղթի մէջ, որ մատենագրութեան անդրանիկ վաւերագիրներից է: Պրոկլի թղթի պատասխանի մէջ կարդացւում է Մաշդոց: Նոյն ընթերցումը պահում է եւ «Կնիք Հաւատոյ» հին եւ կարեւոր յիշատակարանը ինչպէս եւ միւսները, որ օգտուել են Պրոկլի եւ Սահակի թղթերից (Աբրահամ կաթողիկոս, Գագիկ Թագաւոր եւ այլ): Համեմատաբար ուշ ժամանակ են երեւան գալիս Մաշտոց եւ Մաշբոց գրութիւնները:

Եթէ առաջնութիւնը տալու լինինք Մաժդ-ոցին, խնդրոյն աչքի է ընկնում նրա հնչական մերձաւորութիւնը Մազդ-ի: Սակայն իրանական գետնի վրայ Մազդ- չէ կարող տալ Մաժդ-, որովհետեւ պակասում են հարկաւոր պայմանները, օրինակ i կամ r հնչիւնը նախընթաց վանկում, որպիսի դրութեամբ z փոխւում է ž:

Մնում է մեկնել հայերէն, թերեւս, -ոց մասնիկի -ց հնչիւնի ազդեցութեամբ: Մի ենթադրութիւն որ կը մնայ այդպիսին, մինչեւ որ ուրիշ օրինակով չհաստատուի այս հնչական անցումը:

Բայց կարող է պատահել, որ Մաշտոց եւ Մաշբոց սովորական գրութիւնը լինի եւ հին եւ հարազատ ձեւը, եւ սրանից յառաջացած Մաշդոց եւ Մաժդոց արեւմտեան արտասանութեան ազդեցութեան տակ: Մեր լեզուի արեւմտեան բարբառի առանձնայատկութիւնը շատ աւելի հին է քան ենթադրւում է:

Այս դէպքում պէտք է հրաժարել յիշած ստուգաբանութիւնից եւ համեմատել Մաշտոցը մի ուրիշ անուան հետ, որ դարձեալ իրանական է եւ հին:

Հերոդոտը (VII 79) յիշում է Μάσιστος անունը, որ կրում էր Քսերքսի զօրականներից մէկը, նա որ առաջնորդում էր Սապիր (Հայ Սպեր) ցեղի բանակը: Ասել է թէ Հայաստանի սահմանների մէջ յայտնի է եղել այդ անունը: Masistus գերադրական աստիճան է mas-, յունարէն μακ-ρός 'երկար' բառի, ուրեմն masišta- 'ամենից երկարագոյն': Կարող է լինել գերադրական եւ maz- 'մեծ' բառի, mazišta 'ամենամեծ': Երկու դէպքում էլ հայերէնում սպասելի է Մաշտ- համաձայն իրանականի:

Իբրեւ ստուգաբանութիւն նոյնչափ հաւանական է, որքան առաջինը: Խնդիրն այն է թէ ո՞ր ընթերցումն է հնագոյնը Մաժդոց/Մաշդոց թէ Մաշտոց/Մաշբոց:

Հաւականութիւնը առաջնի կողմն է, դատելով ըստ յիշատակարանի: Նրա վերայ հիմնած ստուգաբանութիւնն այն առաւելութիւնն ունի, որ անուան տալիս է Teophore 'աստուածակիր' ծագում, որ այնքան բնորոշ է իրանական անուանակոչութեան:

Ինչ վերաբերում է -ոց վերջաւորութեան, ծագումը մութ է, ինչպէս եւ նրա կապը -ոց մասնիկի հետ: Յատուկ անունների մէջ բացի Մաշթոցից նոյն մասնիկը ունին Տիրոց եւ Բարոց: Առաջին բագրատունի իշխանի անուն էր, որ Վասակի համախոհներիցն էր, իսկ երկրորդը՝ Վահանի ընկերներից եւ Պապի որդի: Պապ եւ Բար նոյն անուններն են, մէկը պարթեւ ձեւն է միւսը սասանական: Հայրը հին անունն է կրում, որդին նոր: Ինձ յայտնի է եւ մի երրորդ անուն Ափոց, որ սակայն դեռ ստուգելի է ընթերցումը թէեւ հաւանական է, որ Յափիկ Մոկաց եպիսկոպոս անուան ուրիշ ձեւն է: Պ. Ֆնտգլեանի նկատողութիւնը իմ բերած օրինակների վերաբերեալ անպատեհ է, քանի որ խօսք չի կարող լինել «աւել պակաս»ի մասին: Իրեն եւ ընթերցողներին եմ թողնում դատել «զուգադիպումի» արժէքը լեզուագիտական եւ բանասիրական տեսակէտներից:

Գ.

Յարգելի պարոնը բարի ցանկութիւն է ունեցել՝ ցրելու իմ «չուարումս» Մեսրոպ անուան հանդէպ: Ինչո՞ւ Հայ լուսաւորութեան հայրը կրկնակի անուն է կրում եւ ինչո՞ւ նրա ձեռնասուն աշակերտը Կորիւնը չի յիշում Մեսրոպ անունը, ինչպէս եւ Փարպեցին: Արդեօք մէկը աշխարհական անունն է, միւսը՝ հոգեւոր թէ մի ուրիշ գաղտնիք կայ — այս հարցերը սպասում են

դեռ լուսաբանութեան, եթէ երբեւեցէ լուսաբանելու լոյս կայ: Պ. Ֆնտգլեան կարծում է, որ այս կնճիռը արդէն լուծել է եւ լուծել շատ հեշտութեամբ: Մեսրոպ անունը չինծու եւ արհեստական է համարում եւ Խորենացու հնարածը: Լաւ է ասած, մարդու աչքը դուրս գայ անունը դուրս չգայ: Որպէս թէ Խորենացին կամենալով Մաշթոցին համեմատել Սերովբէ հետ, ստեղծել է Մար-Սերովբ, որից Մեսրովբ: Մեղք է պատմահօրը վերագրել այսպիսի անհեթեթութիւն: Մաշթոցին «Սրովբէատես» կոչողը գիտենալու էր արդէն Մեսրոպ անունը: Բառախաղը Մեսրոպից է ծագել եւ ոչ հակառակը:

Իր ենթադրութիւնը արդարացնելու յուսով Պ. Ֆնտգլեան յիշում է, որ Խորենացին ճարտար է անուններ յերիւրելու մէջ, որի մի ապացոյցն է Անուշաւան, որ աղաւաղումն է Անուշռուանի: Այս առթիւ քար նետել պատմահօր երեսին անտեղի է: Խորենացին, որի մօտ կարդալու է Անուշռուան փոխանակ Անուշաւանի (որ գրչագիրների սխալն է Արտաւան եւ միւս -աւան, -ուան յանգող անունների ազդեցութեամբ) առել է այդ խորհրդաւոր անունը Արայի զրոյցներից որ Աղոնիսեան տիպի հայ աստուածութեան պատկեր է մեռնելու եւ յառնելու յատկութեամբ, ինչպէս ցոյց ենք տուել ուրիշ տեղ:

Խորենացուն գողանալ տալով Խոսրով Նուշիրուանի մականունը պարոնը տեսնում է նոր ապացոյց որ Խորենացու պատմութիւնը խմբագրուած է Զ. դարում: Ներկայումս արդէն փաստ է, որ Խորենացու պատմութիւնը գրուած է 680 թուականից յետոյ եւ Զ. դարի մասին խօսք անգամ չի կարող լինել: Դառնալով Մեսրոպ անուան, պէտք է ձեռնպահ մնալ նոր մեղքեր բարդել պատմահօր առանց այն էլ ծանրաբեռնուած ուսերին: Խորենացին հեղինակ չէ «պատմութիւն վասն սրբոյն Սահակայ եւ Մեսրովբայ» գրութեան եւ ոչ հեղինակ ողորմելի բառախաղին:

Մաշթոցի երկրորդ անուան իսկական հնչումը նմանապէս անորոշ է, ինչպէս եւ առաջին անուան: Խորենացու պատմութեան մէջ Մեսրոպ է եւ մենք դոնէ տրամադիր էինք առաջնութիւնը տալու այս գրութեան: Սակայն «Կնիք Հաւատոյ» ունի Մեսրոբ Պրոկլի թղթի պատասխանում այնտեղ, ուր «Գիրք թղթոց» ունի Մաշդոց: Ի նկատի առնելով «Կնիք Հաւատոյ» կարեւոր ժողովածուի պատկառելի հնութիւնը հաւանական է թերեւս, Մեսրոբ համարել աւելի հին քան Մեսրոպ:

Այս պայմանով հնարաւոր եմ գտնում առաջարկել հետեւեալ ստուգաբանական փորձը:

Մեսրոբ Mesrob հաղորդ է իրանական մեծ աստուածութեան անուան, որ է Միտր: Նա բաղկացած է երկու տարրից *Meh-srob, ուր առաջին մասը՝ *Meh ձեւափոխումն է Միտրի անուան: Յայտնի է, որ հին Mitra տալիս է Midra, Mihr, Meh, Mer, Mel-, որ տեղից եւ հայերէնում Միհր, Մեհ (մեհեան), Մեր (Մերշապու ), Միհեր, Մլեհ (< պրս. Milād հին Mi[illegible] lat-ից), Μελίας (բիւզանդական հայ գործիչ):

Երկրորդ տարրը -սրոբ նոյնն է ինչ որ տեսնում ենք Խոսրով անուան մէջ, պարսկերէն χosrōb, <*hu srāva; srava- պահուած է հայերէն փոխառեալ դ-սրով բառի մէջ, համապատասխանում է յունարէն κλέος, սլաւ. слово եւ նշանակում է իսկապէս «խօսք, գովք» (հմմտ. ռուս. слово 'խօսք' եւ слава 'փառք'): Հայերէն խո-սրով, դ-սրով աւելի հին է քան իրանական χo-srōb, բայց վերջինս պատահում է նաեւ աւեստայում, dura-srōb 'վատախօս' բառի մէջ, որ հակադրադաշտական եւ հերձուածող կարապ կամ կարապան դեւի մակդիրն է:

Այս վերլուծումով Մեսրոբ < Me$^{h}$-srōb նշանակում է 'Միհր գովող, փառաբանող' կամ 'գովեալ ի Միհրէն': Յունական եւ սլաւոն յատուկ անունների մէջ եւս ընդունուած է այս բառը, ինչպէս Θεμιστο-κλῆς, Vladi-slav, ուր κλῆς < κλέης, *kleues, եւ -slav համասար են -srob, -սրոբին:

Եւ վերջապէս Me$^{h}$srōb-ի Mesrōb փոխանցման, այսինքն -h հնչիւնի կորուստի օրինակ կարող է ծառայել պարսկերէն Mihrāb անունը որ հայերէն հնչւում է Մեհրաբ եւ Մերաբ: Mehrāb եւս կազմուած է նոյն Mihr եւ āb բառերից, āb, սանսկր. ābha նշանակում է 'փայլ', որով Mehrab 'Միհրափայլ' իմաստի կողմից մօտենում է Մեսրոբին 'Միհրափառ':

Առաջարկիս ստուգաբանութեան թերիքն այն է, որ համապատասխան անունը չենք գտնում իրանական լեզուներում: Բայց այս թերիքը առանձին կարեւորութիւն չունի:

*Հայերէնում կան շատ բառեր, որ իրենց կազմով իրանական են անկասկած, թէեւ չեն մնացել կամ միայն նրանց հազիւ նշմարելի հետքերն են մնացել Իրանում:*

*Ամէն պարագային Մեսրոբ իրանական տեսք ունի եւ մեր փորձը ապացոյց է որ հնարաւոր է պատշաճ ստուգաբանութիւն գտնել: Ցատուկ անունների մեկնութիւնն ինքնին դժուար է, մանաւանդ, երբ եզակի օրինակներ են ինչպէս Մաշթոց եւ Մեսրոպ: Նրանց կապը Արամազդ եւ Միհր մեծ աստուածների հետ հաւանական է, բայց փաստ դառնալու համար պէտք է որ վստահ լինենք, որ Մաժդոց եւ Մեսրոբ հնագոյն ձեւերն են:*

Դ.

*Չէինք ուզենայ անուշադիր թողնել եւ Գ. Ֆնտգլեանի բանասիրական նկատողութիւնները մեր աշխատութեան առթիւ, ուր գովական ջանք է անում մոլորեալիս սխալները ուղղելու: Մաշթոցի գործունէութեան մասին խօսելիս ինչ ինչ դիտողութիւններ էի արել Կորիւնի երկի նկատմամբ, կասկած էի յայտնել, որ երկը գրուած է թերեւս Վահանի մահից յետոյ:*

*Յարգելի բանասէրը փորձում է այլկերպ թարգմանել եւ մեկնել Վահանին նայող հատուածր:*

*Օգնութեան է կանչում փոքր Կորիւնին եւ Ագաթանգեղոսին եւ կրկնակի յանցանք է գործում իրեն մեղսակից անելով անմեղ հեղինակներին:*

*«Իսկ բարեացապարտ*ին *Վահանայ յանկարծահաս կենաց ամենեցուն լինէր*, որ *աշխարհածնիւն հայրենեացն սեպհական* որդի *գտեալ, շնորհաւքն Քրիստոսի Աստուծոյ մերոյ մերձաւոր կենակից վայելէ*ր *եւ զի ըստ օրինակի գրելոցս առ ի մէնջ հարքն ի կատարումն դարձան» . . .:*

*Ահա ինչպէս է հասկանում այս հատուածը Գ. Ֆնտգլեան. «Եթէ լաւ միտ դրուի, այս հատուածր ոչ թէ Վահանի մահը կը նշանակէ, այլ ապրիլն եւ բարւոք ապրիլը իբր օգնական, պաշտպան, ընտանի ամէն անոնց* որոնք *Մաշթոցի եւ Սահակայ աւետարանական ընթացքով Ս. գիրքը խօսեցնել տալով . . . վերստին ծնան ամբողջ Հայաստան աշխարհը, Սահակ ու Մաշթոց հայրենուն սեպհական որդի գանուեցան եւ յանձին Վահան Ամատունիի* յանկարծ *ուրեմն կը վայելէ*ին *բարերար, պաշտպան, ընտանի,* «մերձաւոր» «կենակից» հոգեւոր նոր ծնունդին բերմամբ:

*Ասել է թէ Գ. Ֆնտգլեանը կամայականօրէն հակառակ քերականական կանոնների ընդգծուած* որ, *որդի*, *լինէ*ր *յատկացնում է «ամենեցուն» եւ ոչ Վահանին: Թողնում է «բարեացապարտ*ին*» սեռական հոլովը առանց բացատրութեան: Թարգմանութեան փոխարէն առաջարկւում է մի մեկնութիւն բռնազբօսիկ եւ անյարիր, ինչպէս կը տեսնենք:*

*Վահանի պաշտպանութեան եւ հովանաւորութեան պէտքն էլ աւելի զգալի էր, շարունակում է Գ. Ֆնտգլեան, զի հայրերը վախճանուել էին: Այսպէս է ուզում կապել վերջին նախադասութիւնր նախընթացի հետ: Պարոնը հաւատացնում է, որ իրեն պէս են հասկացել յիշեալ հատուածը նաեւ փոքր Կորիւնը եւ Ագաթանգեղոս, այն է «յանկարծահաս»ով մահ չեն հասկանալ այլ հասնիլ, պաշտպանել:*

*Թող բողոքէ ինքը փոքր Կորիւնը այս ամբաստանութեան դէմ.*

*«Իսկ բարեացապար*տն *Վահան յանկարծահաս կենաց* ապրնջական *ցանկալի ամենայն* սրբոց *լինէ*ր *որ աշխարհածնունդ հայրենեացն սեպհական որդի գտեալ՝ շնորհաւքն Քրիստոսի մերձաւոր կենացն* յաւիտենից *լինէ*ր»:

*Իմաստը աներկբայելի է եւ հակառակ Գ. Ֆնտգլեանին, որ անտես է արել* սրբոց *եւ* յաւիտենից *բառերը: Ասպնջական ծագում է ասպինջ -ից, որ թւում է թէ նշանակում է 'կայարան, ճիահանգիստ': Ինչպէս հնում, այնպէս այժմ կայարանները կամ կառուանատրայները միաժամանակ եւ հիւրանոց են, իջեւան: Այստեղից ասպնջական նշանակում է 'հիւր, անցորդ' եւ 'հիւրընկալ, հիւրանոց': «Ասպնջական լինել» կարող է ունենալ երկու իմաստ՝ 'ընդունարան լինել, հովանաւորել' եւ 'անցորդ կամ հիւր լինել': Փոքր Կորիւնը գործ է ածում երկրորդ մտքով թէեւ թւում որ քաղուած է մեծ Կորիւնից, որ նոյն դարձուածքը կիր է առած առաջին իմաստով իբր հիւրընկալող (Յուրս իշխանի համար ասուած է «ասպնջական եղեալ» Մեսրոպայ (էջ 20), ինչպէս եւ Գօղոս առաքեալի բարեկամների նկատմամբ՝ «զքրիստոսամեծար ասպնջականիցն իւրոց» (էջ 5): Հատուածի իմաստն այն է որ Վահանը՝ մահը հասած, ցանկալի հիւր է*

լինում բոլոր սրբերին եւ Քրիստոսի շնորհով մերձաւոր դառնում յաւիտենական կեանքին: Ուրիշ խօսքով Վահանը մեռնում է եւ արժանանում սրբերի հաւասար յաւիտենական կեանքի:

Հետաքրքրական է, որ մեծ Կորիւնի մօտ հայրերի մահը ամփոփող վերջին նախադասութիւնը փոքր Կորիւնը կապում է յաջորդ պարբերութեան հետ եւ այսպիսով զրկում է Պ. Ֆնտգլեանին այն նեցուկից, որ որոնում է նա սոյն նախադասութեան մէջ ի նպաստ իր ըմբռնումին: «Եւ այդ ըստ աւրինակի գրելոցս առ ի մէնջ զերանելեաց սուրբ հարցն զվարս եւ զվախճան փոքր ինչ պատմելով ի կատարումն դրանս ածից, ոչ եթէ ի հին համբաւուց զրուցաց տեղեկացեալ...» եւ այլն: Այստեղ «ի կատարումն», թէեւ առնուած է իր բնագրից, բայց ուրիշ կիրառութիւն ունի քան այնտեղ, նման «առաջնական եղեալ» դարձուածքին, որին տուած է ուրիշ նշանակութիւն քան մեծ Կորիւնի մօտ է: Իմաստն այն է թէ որովհետեւ հայրերը մեռել էին, որպէս ինքն արդէն գրել է, ուստի թող ոչ ոք չկարծէ որ ուրիշի բերանից է քաղուած կամ զրոյցներից: Ոչ, ինքն ականատես է եղել հայրերի եւ կերպարանքին եւ գործերին: Այս ուրիշ բան է քան ենթադրում է Պ. Ֆնտգլեան, որի կարծիքով, Վահանը բարի ժամին է հասնում, որովհետեւ սուրբ հայրերը վախճանել էին եւ տեղը բաց էր մնացել:

Ագաթանգեղոս եւս յուսալի բարեխօս չէ պատուական հակառակորդիս համար: Բաւական է ասել, որ վիճելի բառը՝ «յանկարծահաս» Ագաթանգեղոս փոխել է «յանկարծակամ»ի հետեւապէս վերցրել է միջից վէճի առիթը: Ագաթանգեղոս քննելի հատուածը չրջում է Տրդատի վերայ եւ արտադրում է հաւանօրէն փոքր Կորիւնից առանց ջանալու հասկանալ էութիւնը, բաւականանալով յիշեալ բառի թեթեւ բայց կարեւոր փոփոխութեամբ: Հակառակ փոքր Կորիւնին, Ագաթանգեղոսին եւ Նոր բանասէրների Պ. Ֆնտգլեան ուզում է այլ կերպ հասկանալ Վահանի հատուածը եւ կարծեմ, մոլորւում է ուրիշների «մոլորութիւնը» ուղղելու առաջինի ջանքի մէջ:

Ցարգելի պարոնի առաջարկած իմաստն անընդունելի է: Վահանի մասին Կորիւնը պատմում է, որ հազարապետ էր, որ սուրբ հայրենի աշակերտն Հմայեակ Մամիկոնեանի հետ, եւ որ Մեսրոպի մահից յետոյ նա է, որ հոգածու է եղել հանդիսաւոր թաղելու եւ խորան կանգնելու: Այս բոլորից յետոյ Կորիւնին վերագրել այն, որ նա կարող էր ասել, թէ Վահանը յանկարծ հրապարակ եկաւ երբ հովանաւոր վերածնեալ երկրին եւ փախարինեց մեռած սուրբ հայրերին, անաջող եւ անհիմն ենթադրութիւն է: Կորիւնն այնքան մեծ համարում ունի Ս. Սահակի եւ Մեսրոպի մասին, որ երբեք չէր ներել իրեն կարծելու, որ Վահանը մի սոսկ իշխան կարող էր նրանց տեղը բռնել: Կարիք չկար այսպիսի արտասովոր չողոքորթութեան: Վահանից աւելի արժանի մարդիկ կային: Եւ սուրբ հայրերի փոխարէն արդէն «ի նոյն վերակացութիւն դառնայր Յովհան»ը, որ կապանքների մէջ արժանացել էր սրբութեան եւ «խոստովանողական անուն ժառանգեաց»: Եւ միթէ միայն Յովհան էր: Իսկ Յովսէփը, որ տեղակալ էր եւ որի հրամանով գրում է Կորիւնը ո՞ւր էր, եւ ո՞ւր էին այն սրբազան եպիսկոպոսները, այն փայլուն կաճառը սուրբ հայրերի, որ Մեսրոպի մահից քանի մի տարի յետոյ պիտի ժողովուէին Արտաշատում ճակատ դնելու պարսից բռնութեան ի պաշտպանութիւն եկեղեցու: Պակաս չէին եւ քրիստոսասէր իշխանազունք, Վարդան եւ Վասակ իրենց համախոհներով այն ժամանակ տակաւին սեւ եւ սպիտակ ոչխարները չէին բաժնուած եւ կազմում էին մի հաւատարիմ հօտ: Քանի մի տասնեակ լուսաւոր անունների շարքին Վահանն այնպիսի մի բացառիկ դէմք չէր, որ Կորիւնը նրան պարգեւէր քրիստոնէից հովանաւորի, Սահակի եւ Մեսրոպի փոխանորդի նախանձելի պատիւը: Ոչ, Վահանը երեւան է գալիս Կորիւնի մօտ, համեստ դերում, եթէ միայն չաղաւաղենք նորա խօսքերը:

«Իսկ բարեացապարտին Վահանայ յանկարծահաս կենաց ամենեցուն լինէր...» նշանակում է «բարեացապարտին Վահանայ հաս կենաց յանկարծ լինէր ամենեցուն», այսինքն Վահանի կեանքի վերջը անսպասելի էր բոլորի համար: Կորիւնը սիրում է ճարտասանական ոլորուն դարձուածներ: Յանկարծահաս՝ ածական չէ, այլ գոյականի իմաստ ունի եւ կախուած է «բարեացապարտին Վահանայ» սեռական հոլովից: «Ամենեցուն՝» չի վերաբերում «կենաց»ի, այլ ենթարկու է «յանկարծ»ի, որ միացել է «հաս»ի հետ: Նոյնպիսի եղանակով Կորիւնը գրում

*է՝ «հայրենակատար մեծարեալ պայմանաւ», այսինքն մեծարեալ կատարմամբ պայմանի հայրենեաց (կամ հարց)։ «Հաս կենաց՝» նոյնն է ինչ որ օր–հաս մօտաւորապէս, եւ նոյնանիշ է մահուան։*

*Հետեւեալ նախադասութիւնը վերաբերում է Վահանին եւ ոչ ամենեցուն՝ «որ աշխարհածնիւն հայրենեացն սեպհական որդի գտեալ, շնորհաւքն Քրիստոսի մերձաւոր կենակից վայելէր»։ Սրա իմաստը պարզելու համար պէտք է ուշադիր լինել «բարեացապարտ» բառին։ Ի՞նչ է նշանակում «բարեացապարտ» եւ ինչո՞ւ է Վահանը այդպէս կոչւում։*

*Բարեացապարտը նա է, որ ուրիշից բարիք է տեսել եւ ուրեմն պարտք մնացել, անհատոյց եղել։ Վահանի ստացած բարիքը մեկնւում է հետեւեալ նախադասութեան մէջ, որ է գրական ծննդեամբ որդի է ճանաչուել հայրերի կողմէն, ուրիշ խօսքով աշակերտել է Ս. Սահակ եւ Մեսրոպին։ Արդարեւ վերեւ Կորիւն արդէն յիշում է, որ «գլխաւոր աշակերտների» թւում գտնւում էր Վահան Ամատունին եւ Հմայեակ Մամիկոնեան։ Ասել է թէ Վահանը երախտապարտ է, որ սուրբ հայրերը վարդապետել են նրան եւ որդեգրել որպէս մտաւոր, գրագէտ զաւակ։ Դարձեալ երախտապարտ է Վահանը, որ Քրիստոսի շնորհով արժանացել է «մերձաւոր, կենակից» լինելու պատուին։ «Մերձաւոր եւ կենակից» հոմանիշ են եւ նշանակում են մօտիկութիւն։ Եթէ յաջորդ նախադասութիւնը՝ «եւ պի ըստ օրինակի գրելոցս առ. ի մէնջ հարքն ի կատարումն դարձան» չարունակութիւն համարենք Վահանի նայող հատուածին, ինչպէս տպագրութեան մէջ է, որին համամիտ է եւ Գ. Ֆնտգլեան, այն ատեն Վահանի վայելած մերձաւորութիւնը պիտի տեղափոխենք անանց աշխարհը։ «Շնորհաւքն Քրիստոսի» դարձուածն աւելի հաւանական է դարձնում այս ըմբռնումը նոյն իսկ անկախ վերջին նախադասութեան կցումից։ Վահանը կենդանութեանը որդի էր սեպհական հայրերի, իսկ մեռնելուց յետոյ Քրիստոսի շնորհով դառնում է կենակից հայրերին եւ այն աշխարհում, քանի որ հայրերը եւս արդէն վախճանած էին։ Փոքր Կորիւնը ճիշդ այսպէս է հասկացել, ասելով «մերձաւոր կենացն յաւիտենից լինէր»։*

*Սակայն աւելի հաւանական է̄, որ հայրերին մահուան վերաբերող նախադասութիւնը կապուած է յաջորդ տողերին՝ «ոչ եթէ ի հին համբաւուց տեղեկացեալ եւ մատենագրեալ զայս կարգեցաք...» կարն այնպէս է հասկանալու, որ հայրերը քանի որ մեռած էին, կարող էր կասկած ծագել, որ համբաւներից է քաղած հեղինակն իր պատմութիւնը։ Այս կասկածը վանել է ուզում հաւատացնելով, որ ինքը գրում է որպէս «ականատես եղեալ կերպարանացն եւ լսող շնորհապատում վարդապետութեանն»։ Կը տեսնենք, որ հեղինակի երկիւղը խորհրդաւոր է։*

*Պարիս։* *ՊՐՈՖ. Ն. ԱԴՈՆՑ*

*(Շարունակելի։)*



# ՄԱՏԵՆԱԽՕՍԱԿԱՆ

---

*Փրանսահայ Տարեգիրք 1927.* (Annuaire franco-arménien.) *Պարիս, Հրատարակութիւն "Մասիս", Գին՝ Գաղղիա 20 Ֆր., Արտասահման 25 Ֆր.։*

*Նպատակայարմար տարեգիրք մը յարամնաց, հետաքրքրական ու հմտալից։ Աւելորդ վերադիրներու չասյլում պիտի կարծէ ընթերցողն եւ «մեծաչուինդ գովարանութիւն՝» եթէ գիրքը տեսած չէ. իսկ եթէ գիրքը կարդալու սկսի, ամէն յօդուածին վերջը պիտի կրկնէ՝ այս տողերս գրողին հետ՝* «Նպատակայարմար» *գիրք մը։*

*Գաղղիոյ հայ հին եւ նոր գաղթականութեան պատմական ապացոյցներու հաւաքածոյ մըն է գիրքս։ Երկրորդ թերթէն սկսեալ մինչեւ վերջին էջը՝ մանրամասնաբար եւ ամենուստ՝ կը ձգտի հասնիլ նպատակին։*

*Շատ մը տարեգիրներ, օրացոյց–տօնացոյցներ հրատարակելը տարեմտին՝ սովորութիւն եղաւ աշխարհիս չորս անկիւններն, ուր հայ անհատ մը կայ։ Գիտական, ազգային յօդուածներ չեն պակսիր անոնց մէջ, բայց հայ գաղթականութեան պատմութեան նպաստներ հայթայթողներուն մէջէն առաջիններէն կը համարնիք տարեգիրքս, որ* հիմայ *հետաքրքրութեամբ կը կարդացուի, եւ* ապագային՝ *խուզարկու պատմագրին*

„HANDES AMSORYA“, MONATSSCHRIFT FÜR ARMENISCHE PHILOLOGIE

1927

ԹԻՒ 6 ՅՈՒՆԻՍ

ՔԱՌԱՍՆՈՒՄԷԿԵՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ



ՎԻԵՆՆԱ, ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

# ԲԱՆԱՍԻՐԱԿԱՆ

---

## ԿՈՐԻՒՆԻ ՄԱՍԻՆ

(Գ. ՖՆՏԳԼԵԱՆԻ ՆԿԱՏՈՂՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԱՌԹԻՒ)

*(Շարունակութիւն եւ վերջ:)*

### Ե.

*Գ. Ֆնտգլեանի նորալուր մեկնութիւնը, կարծենք, չի արդարանում բնագրի ստոյգ վերլուծումով: Խօսքը իսկապէս Վահանի մահուան մասին է:*

*Հատուածի իմաստը արգոյ պարոնը փորձում է գտնել անգամ Եղիշէի մօտ: Իբրեւ թէ նրա խօսքերը՝ «որ հազարապետն աշխարհին էր իբրեւ զհայր վերակացու համարեալ էր աշխարհականաց քրիստոնէից» շօշափում են Կորիւնի հատուածը Վահանի մասին, համաձայն իր մեկնութեան: Հազիւ թէ: Հազարապետութիւնը մի պաշտօնակալութիւն էր, որ շատ մօտ էր կանգնած շինականութեան, ինչպէս պարզել ենք ուրիշ տեղ: Արշակ թագաւորի ժամանակ հազարապետութիւնը գտնւում էր Գնունեաց ձեռքին եւ Փաւստոսը անուանում է նրանց «շինականաշէն», նրանց պաշտօնը՝ «աշխարհատես խնամակալութիւն, աշխարհաշէն աշխարհահատած դեհկանութիւն»: Այն «աշխարհը», որ տեսնում, խնամում, շինում, տածում են շինականութիւն է, աշխարհիկ ժողովուրդը, որ Եղիշէն կոչում է «աշխարհականք քրիստոնեայք»: Փաւստոսի նման Եղիշէն եւս կարծում է, որ հազարապետը հայր է, խնամակալ ժողովրդեան: Եղիշէի խօսքերը հազարապետի անձի մասին չէ, այլ հազարապետութեան որպէս պաշտօնէութեան կամ, ինչպէս Փաւստոսն է ասում, գործակալութեան: Արդէն հազարապետի անունն անգամ չի յիշում եւ գանգատւում է, որ Ատրորմիզդը հեռացնում է հայ հազարապետին, խլում է հայերի ձեռքից այդ կարեւոր պաշտօնը եւ յանձնում մի պարսիկի: Ուրիշ առթիւ Եղիշէն յիշում է յականէ Վահան Ամատունուն, բայց առանց գովեստի, առանց ակնարկի, որ նա որ եւ է առաւելութիւն ունի միւս իշխանների հանդէպ, նա, որին սուրբ Սահակի եւ Մաշթոցի տեղը բռնելու մեծ արժանաւորութիւնն է ուզում արտօնել Գ. Ֆնտգլեան: Որքան եւ կարող եւ արժանաւոր անձն լինէր Վահան, նա սուրբ հայրերի վերաբերմամբ միայն բարեացապարտ է, որովհետեւ գիր է սովորել որդի ճանաչուել եւ նրանց կենակցութիւնը վայելելու արժանացել այս թէ այն աշխարհում: Այլ կերպ մտածել էլ չէր կարող Կորիւնը, այնքան մեծ եւ բարձր էին նրա աչքում սուրբ հայրերը:*

*Արդ Վահանի մահուան յիշատակութիւնը, ինչպէս եւ մի քանի ուրիշ դիտողութիւններ կասկածելի էին դարձրել մեզ համար Կորիւնի գրութեան, աւանդաբար ընդունուած, ժամանակը: Վահանը գերուած նախարարների թւումն էր, ուրեմն Կորիւնի գործը չէր կարող յառաջ երեւալ քան գերիների դարձը:*

*Այս մոլորութիւնը վանելու բարի նպատակով է, որ Գ. Ֆնտգլեանը փորձում է նորապէս լուսաբանել վտանգաւոր հատուածը: Կարծելով, որ կասկածս իր սաղմի մէջ արդէն խեղդել է իր մեկնութեամբ, յայտարարում է մի չորս պատգամներ, որոնց վերայ կանգ առնել հարկադրուած ենք:*

*Արգոյ պարոնը կարելի չէ գտնում, որ Կորիւն ապրած լինի մինչեւ 450 թուի աղէտաւոր անցքերը, եւ ոչ «տրամաբանական, որ Վահան Ամատունի 442ին համբաւաւորապէս Մաշթոցի գիրը կազմելէ յետոյ . . . ութ տարիներ եւս անցուցած ըլլայ առանց աւարտելու մատենիկը»: Տարաբախտաբար տրամաբան պարոնը զլանում է ծանուցանել թէ որտեղից գիտէ, որ Մաշթոցի գիրը կազմուել է 442ին: Թւում է թէ վէճի նիւթը հէնց այս է, որ ենթակայ է քննութեան:*

*Դարձեալ՝ Շահապիվանի ժողովի 444/5 թ. կանոնների մէջ Գ. Ֆնտգլեան գտել է ինչ ինչ կէտեր, որ առնուած կը թուին Կորիւնի գրքէն, ուրեմն Մաշթոցի վարքը յառաջ է այդ ժողովից: Սակայն որքան եւ քննելի լինի Կորիւնի գործը, յամենայն դէպս նա շատ աւելի վաւերական է քան Շահապիվանի ժողովի կանոնները, որոնք միայն Գ. Ֆնտգլեանի համար յօրինուած կը կարծուին 444/5 թուին:*

*Այնուհետեւ վկայ է կոչւում Ագաթանգեղոսը, որ գիտէ եւ կ'օգտուէ Կորիւնէն եւ որ «Ե. դարի կիսէն ետք չի կրնար գրուած ըլլալ, քանի որ Փարպեցին իբր առաջին գիրք պատմութեան կը յիշէ զայն»: Երջանիկ է այսպէս մտածողը, որ հեշտութեամբ վճռել է պարզել այն կնճռոտ խնդիրները, որոնց առաջ կանգնած է անզօր*

հայ բանասիրութիւնը: Փարպեցու յառաջաբանը խառնակ է եւ կասկածի տակ: Վրայից կարծես օտար ձեռք է անցել: Հիմք կայ անվստահելու, որ Ագաթանգեղոսն առաջին գիրք համարուէր Փարպեցու օրով: Նրանից քիչ յետոյ ապրած յոյն հեղինակից գիտենք, որ Զ. դարի առաջին կիսում Փաւստոսի գործը այլ վիճակի մէջ էր քան այժմ եւ ամփոփում էր նաեւ հայոց սկզբնական պատմութիւնը, որ է Անանունն, կեղծ-Մարաբաս եւ կամ կեղծ-Ագաթանգեղոս: Հարցը քննուած է մեր կողմէ դեռ 1901 թուին եւ յոյն վկայութեան ճշմարիտ իմաստը լուսաբանուած: Շատ տարիներ անցած ուրիշներն են նոյն հարցով զբաղուել եւ եկել նոյն հետեւութեան, առանց պատշաճ հարկը տալու հետազօտութեանս: Դափնէ պսակս վտանգուած չեմ համարել, այլ կարծել եւ կարծում եմ, որ ինձնից անկախ են յանգել նոյն եզրակացութեան: Գոհ եմ մնացել տեսնելով, որ ուրիշներն եւս նոյն են մտածում, ուրեմն, հայեացքս ճշմարիտ է եւ հաստատուն:

Այդ եթէ Զ-ի առաջին կիսում Անանունի պատմութիւնը դեռ անջատուած չէր Փաւստոսից, որ թափառէ անտէր անտիրական եւ վերջը Ագաթանգեղոսի անունով ծպտեալ հիւրընկալուի Սեբէոսի կողմից, ապա ուրեմն Փարպեցին առաջին պատմագրի պատիւը պէտք է տար Փաւստոսին եւ ոչ Ագաթանգեղին: Փարպեցու յառաջաբանի շփոթը ծագել է թերեւս նրանից, որ փորձել են սրբագրել եւ յարմարել յառաջաբանը նոր դրութեան, որ ստեղծուել էր Անանունի անջատումով եւ առաջնութիւնը անցել Ագաթանգեղին: Եւ զարմանալու չէ, քանի որ գիտենք, որ անգամ նորերս 1793 թուի հրատարակիչը հնարաւոր էր համարել պատուագել Փարպեցու գործը, նրա անունով Խորենացուց մի հատուած Մաշթոցի վերաբերեալ:

Թողնենք սակայն այս հարցը եւ ընդունենք, որ յառաջաբանը հասել է մեզ հարազատօրէն, իր սկզբնական վիճակի մէջ: Ո՞վ կարող է հաւատալ եւ կամ ի՞նչ դրաւական, որ Ղազար Փարպեցու առաջ գրուած Ագաթանգեղը ճիշտ այն Ագաթանգեղն էր, որ այսօր տրամադրելի է, խճողած Կորիւնից քաղած փոխառութիւններով:

Հայաքննին բանասիրութիւնն այլ կարծիք ունի քան Պ. Ֆնտգլեան Ագաթանգեղի մասին. Պրոֆ. Մառը, որ հրատարակել է արաբական թարգմանութիւնն եւ ուսումնասիրել, եկել է այն արդիւնքին թէ այժմեան Ագաթանգեղի խմբագրութիւնը իջեցնելու է մինչեւ ութերորդ դարը:

Մի ուրիշ եւ վերջին առարկութեամբ Պ. Ֆնտգլեան «իր տկարամտութեան անհաւատալի» է համարում, որ Կորիւնի պէս ջերմ կրօնաւորը գովէր Վասակին 450 յետոյ, երբ Վասակ հանեց իր դիմակը եւ յայտնուեց որպէս «եկեղեցականներու դէմ ոգորող, մոգպետի աջակից, կրակատուն կանգնելու օգնական»: Իսկ ինչ է նշանակում Կորիւնի զարմանալի եւ բարձր գովեստը, որ Սիւնեաց իշխան Վասակը «քաջ էր, պարգեւեալ յԱստուծոյ, այր խորհրդական եւ հանճարեղ եւ յառաջիմաց շնորհատուր իմաստութեամբն Աստուծոյ»: Այստեղ արդէն «իր տկարամտութեան», ընդհակառակը, հաւատալի է համարում, որ Կորիւնի խօսքերը նախագուշակումն են, որ Վասակը պիտի խորագիտութեամբ քնացնէր պարսից կասկածները, վստահութիւն գրաւէր երկրում, մարզպան դառնար, որպէս զի յետոյ կրակապաշտութեան ախոյեան հանդիսանայ եւ ազգային կրօնը ոտնակոխ անէ իր քաղաքական հայեացքների նպատակին:

Ասել է թէ Վասակը, այդ «պարգեւեալն յԱստուծոյ», աւելի քիչ հասկացողութիւն ունէր քրիստոնէութեան արժէքի մասին, ինչպէս եւ կրակապաշտութեան թերիքի, քան Պ. Ֆնտգլեանը: Դժուար է հաշտուել այս չարատանջ մտքի հետ: Կորիւնն ինքը համաձայն չէ եւ այլ տեղեկութիւն ունի Վասակի աստուածապաշտութեան վրայ: Նա վկայում է, որ Սիւնեաց իշխանը «բազում ինչ նպաստութիւն ցուցանէր աւետարանագործ վարդապետութեան իբրեւ որդւոյ առ հայր հպատակութիւն ցուցեալ եւ ծառայեալ ըստ աւետարանին վայելչութեան մինչ ի վախճան զհրամայեալսն ի գործ բերէր»:

Սրա պատասխանն էլ պատրաստ է Պ. Ֆնտգլեանի կողմէն: «Քաջայայտ է, ասում է յարգելի պարոնը, թէ Վասակ չպահեց այդ հլու հպատակութիւնը 449էն ետքը, ուրեմն Կորիւնի գրուած մինչ ի վախճան հպատակութիւնը կ'եզրափակէ 449 թուականին իբրեւ ծայրագոյն եզր: Ուրեմն Կորիւնը գրած է իր մատենիկը այդ թուականէն յառաջ»:

Այս հասկացողութեամբ ոչ միայն Վա-

սակը, այլ եւ պատուական Կորիւնը տկարամիտ են դուրս գալիս: Արդարեւ, որ խելքը գլխին մարդը կարող է տակաւին կենդանի, գործունեայ եւ անգամ «երիտասարդ», ինչպէս որոշում է տարիքը Գ. Ֆնտգլեան, անձի մասին ասել թէ նա մինչեւ վերջը հաւատարիմ մնաց: Եթէ հնարաւոր լինէր մինչեւ ի վախճան դարձուածքին ժամանակագրական իմաստ տալ, լաւագոյն ապացոյցը կ'ունենայինք, որ Կորիւնի յայտնի է Վասակի վախճանը: Սակայն անհարթութեան պատճառ ինքը Ֆնտգլեանն է, որ կամ բաւականին հմուտ չէ գրաբարին եւ կամ հապճեպ մտածող: «Մինչ ի վախճան զհրամայեալսն ի գործ բերէր» նշանակում է հրամանները կատարում էր, գլուխ էր բերում ամբողջովին, սկզբէն մինչեւ վերջ, անթերի: Որքան է տեւել եւ երբեւիցէ ընդհատուել է, չգիտենք եւ վիճելի է: Գ. Ֆնտգլեանի պատմագիտութիւնը, որ Եղիշէի վարդապետութիւնից այն կողմը չի անցնում, չի կարող ամէն պարագային յուսի ցնցում համարուել: Կարելի չէ մտածել, որ Վասակ 410 մինչեւ 450, ինչպէս ինքն է որոշում, ուրեմն 40 ձիգ տարիներ գործադրած լինէր միայն այն նպատակին, որ խաբէր, նենգէր պարսիկներին եւ իր հայրենակիցներին, որպէս զի մի օր զօրավիգ լինի մոգերին: Կարելի չէ, որ նա, որ ձգտում էր հայոց թագին, հայոց անկախութեան, ինչպէս իր հակառակորդներն են խոստովանում, պէտք ունենար ուսանելու Գ. Ֆնտգլեանից թէ ի՛նչ էր «հայ ժողովրդի ինքնութեան պահպանման խորունկ ընազդը»: Դժուար է հաւատալ, որ Մաշթոցի աջակցի սրտում քառասուն տարի ծխէր պարսից մոխրոցի մուխը, փոխանակ հայրենի սրբութեան սրբազան կնդրուկը: Այդքան տարուայ յուսաւոր աչքը չէր կարող մի ակնթարթում խաւարել կրակարանների բոցից: Ժամանակ է մաքրել մեր անցեալը եւ ներկան նաեւ կրքերի անառողջ ողողումներից: Այսօր իսկ մեր հասարակական պատասխանատու ոյժերը այլեւս չեն որակում միմեանց քան դաւաճան, ազգուրաց, օտարամոլ, շահասէր եւ ստրուկ օտար շահերի: Ուստի կրքերը չարաշունչ հողմեր են, որ սպառնում են հանգցնել այն ճրագները, որ լուսաւորում են մեր խաւար ուղին: Պատմագիտութիւնը պիտի կարողանայ անաչառ լինել տալով cuique suum.

Զ.

Գ. Ֆնտգլեան չի կարող ուրանալ, որ ուշադրութեան պակասութիւն ցոյց տուինք իր հանդէպ: Բոլոր փաստարկութիւնները քննեցինք եւ ցաւում ենք, որ ոչ մի դրական ցուցում չգտանք, որ փարատէր կասկածները Կորիւնի մասին:

Յայտնի է, որ Կորիւնի լեզուն եւս եզակի է իր յատկութիւններով անդրանիկ մատենագիրների շարքին: Արհեստական եւ չինծու ոճ է, ճապաղ եւ ծանր, որպէս ճռնչող սայլ եւ չունի միւս ժամանակիցների ոճի ճեմական թեթեւ եւ սահուն նազանքը:

Տարակուսելի է Մաշթոցի ակումիտ տիտղոսը: Թէոդոս կայսրը լսելով հայ գրադէտի հռչակը իբրեւ թէ հրամայում է կոչել «վայելուչ մեծարանօք զսուրբն ակումիտ»: Ակումիտ, յունարէն ἀκοιμίτης, նշանակում է 'անքուն': Այսպէս էին կոչւում այն վանականները, որ պարտաւոր էին հերթով աղօթք անել նաեւ գիշերները առանց ննջելու: Ճշմարիտ է, որ անքունների վանական կարգը երեւան եկաւ Թէոդոսի օրով եւ հիմնադիրն էր ոմն Աղեքսանդր, որ յետոյ Ասորիքից տեղափոխուեց Կ. Պոլիս եւ այնտեղ հիմնեց նոր վանք: Բայց անքունները հռչակ ստացան միայն դարու երկրորդ կիսից, երբ Ստուդի(ոս) կրօնաւորը հիմնարկեց Ստուդիոն կոչուած նշանաւոր մենաստանը 463 թուին: Այս թուից յետոյ միայն ակումիտ անունը կարող էր «վայելուչ մեծարանք» նկատուել: Վահանի մահը նմանապէս 462ից յետոյ է: «Ճշմարտապատում եւ վարդապետաւէր» Յոհանը, որ Տիգրանում չարչարանք կրելուց յետոյ դարձաւ «ի վերակացութիւն յերկիրն հայոց», եթէ վերակացութիւն բառով կաթուղիկոսութիւն հասկանանք եւ ոչ եպիսկոպոսութիւն կամ սովորական հովուութիւն, կարող է լինել Յոհան Մանդակունին:

Ահա կէտեր, որ կասկած են յարուցանում եւ Կորիւնի վերջաբանութիւնը մանաւանդ ընդունակ է զօրացնելու կասկածամտութիւն:

Կորիւնը հարկաւոր է գտնում հաւատացնել, որ ինքը համբաւներից եւ զրոյցներից չէ քաղում իր պատմութիւնը, Մաշթոցի վարքը, այլ անձամբ ականատես է եղել հայրերի գործերին եւ անգամ գործակից: Նա «ականատես է կերպարանացն եւ առընթերակաց հոգեւորական գործոց եւ լսող

*շնորհապատում վարդապետութեանն եւ նոցին արբանեակ»։ Սկզբում արդէն հեղինակն իրեն յանձնարարում է որպէս աշակերտ Մաշթոցի՝ «մասնաւոր աշակերտութեամբ վիճակ առեալ» եւ գրում է միւս աշակերտի՝ Յովսէփի հրամանով։ Ի՞նչ կարիք նորէն շեշտելու որ ինքը* «տեսել է *հայրերին,* ներկայ է *եղել հոգեւոր գործունէութեան,* լսել է *շնորհապատում վարդապետութիւնը եւ վերջապէս նրանց* աշխատակիցն *է»։ Որտեղից է հեղինակի այս զգուշաւոր ջանքը յառաջուց փարատելու հնարաւոր կասկածները, որ գրողը ժամանակակից չէ հայրերին։*

*Հեղինակի կանխատեսութիւնն աւելի հեռուն է գնում եւ աւելի կասկածելի դառնում։ Զգում է, որ ժամանակակից գրողից աւելի բան կարելի էր պահանջել, աշակերտը պէտք է որ քիչ աւելի ճոխ տեղեկութիւն ունենար իր ուսուցչի եւ հօր կեանքի վերաբերեալ։ Ուստի փորձում է արդարանալ, որ շատ բան գիտէ, բայց թողնում է՝ («զաճախագոյնն թողեալ») չի ուզում բոլորը գրի առնել («չէաք իսկ հանդուրժօղք զամենայն արարեալսն կտակաւ գիւրաքանչիւրսն «նշանակել»»), այլ միայն այն ինչ որ արժանի պատմելու («առ ի մանրակրկիտ առնելոյ զկարեւորագոյնս պատմելոյ»)։ Եւ յանկարծ խոստովանում է որ «ի նշանաւոր գիտակացն (տպ. գիմակացն) քաղելով (տպ. քակելով) զհամառառօտն (տպ. զհամառօտսն) կարգեցաք, որ(ք) ոչ միայն մեզ, այլ եւ որ զ(մ)առեանսն ընթեռնուն, յայտնի է»։*

*Մի ակամայ* lapsus, *որ մօտ է ճշմարտութեան։ Հեղինակը ուրեմն օգտուել է նշանաւոր գիտակներից, եւ որովհետեւ մատեան կարգացողները գիտեն այդ, ասել է թէ գիտակները՝ գրաւոր աղբիւրներ են։ Հարկաւ խօսքը սուրբ գրքի եւ առաքելոց թղթերի մասին չէ, որոնց վկայութիւններից օգտւում է գրքի սկզբում։ Մեր կասկածները զօրանում են եւ ստանում որոշ ձեւակերպում։ Արդեօք վերջարանութիւնը չի պատկանում այն ձեռքին, որ հարկ է տեսել վերստին խմբագրելու Կորիւնի գործը։ Մաշթոցի վարքը, անշուշտ, գրել է նրա ձեռնասուն աշակերտը Կորիւնը եւ գրել է պարզ անպաճոյճ ոճով, ինչպէս կարելի է ենթադրել Ղազար Փարպեցու քաղուածներից։ Հետագայում մի ուրիշը Կորիւնի գործը վեր է ածել աւելի բարձր ոճի, ինչ ինչ յաւելումներով եւ յապաւումներով։*

*Գիտենք, որ մեզ հասած Կորիւնը ենթարկուել է նորէն կրճատումի, որ յայտնի է փոքր Կորիւն անունով։ Սա հասարակ կրճատում չէ, այլ գրեթէ նոր խմբագրութիւն։ Շատ բան զեղջած է, ինչպէս ձիգ յառաջաբանը։ Կան նաեւ յաւելումներ, որոնց մէջ եւ Խորենացուց առած հատուածը։ Ճիշտ նման ձեւով եւ մեծ Կորիւնը կարող էր լինել վերամշակում Կորիւնի հարազատ գործի։ Միայն տարբեր նպատակով։ Մի դէպքում պէտք է զգացուած բարձրացնել ոճը եւ հասցնել ներբողի ճարտասանական թռիչքի, միւս դէպքում, ընդ հակառակը, պարզել եւ մատչելի անել ընթերցումը։*

*Այս ենթադրութեամբ Կորիւնի վերջաբանը իր անսպասելի մերկացումով հասկանալի կը դառնայ։ Նորա իսկական հեղինակը Կորիւնը չէ, այլ նրա խմբագրողը։ Եւ նա իրօք ճշմարտախօս է, նշանաւոր գիտակը, որից օգտուել է, Կորիւնի սկզբնագիրն է։ Վերջաբանի երկիւղը եւ հաւաստիացումը, որ պատմութիւնը ականատեսի գործ է, նորա խոստովանութիւնը, որ շատը կրճատել է ի նպաստ կարեւորի համաձայն կանոնի* nom multa sed multum, *այս բոլոր ասուած է* bona fide. *Հետեւապէս, այն կէտերը, որ կասկածելի են եւ կամ այդպէս են թւում կարելի է համարել վերամշակողի, այսինքն երկրորդ ձեռքի ակամայ սուտեր։*

*Հազիւ թէ կարիք կայ յիշելու, որ արծարծածս մտքերը տակաւին թէական կառուցումներ են որոշ դիտողութեանց հիման վերայ, որոշ դժուարութիւններ հարթելու համար։ Դրական վճիռներ չեն։ Կորիւնը երեւում է որ Փաւստոսի, Ագաթանգեղի, Ղազարի նման կրել է օտար նորոգիչ ձեռքի ազդեցութիւնը եւ նրանց հետ միասին պիտի գտնէ լուծում։*

## Է.

*Գ. Ֆնտգլեանը, անշուշտ, կը ների ինձ, որ պատեհ առթից օգտուելով քանի մի խօսք էլ ասեմ նրա լեզուաբանական խուզումների նկատմամբ։*

*Հայերէն* խաչ *բառը պարոնը փորձում է հանել ասորական* խուղշ*-ից։ Կարծեմ, կարելի է լռութեամբ անցնել այսպիսի համեմատութեանց մօտէն՝ եւ բնաւ չյիշել, մոռանալ։ Կան մտքեր, որ անհաւատարիմ թռչունի նման դուրս են գալիս յանկարծ*

մոքի վանդակից, որպէս զի այլ եւս չվերադառնան:

Անցնենք «Պահլաւերէն փոխառեալ բառեր» յօդուածին (Հ. Ա. 9—10): Երեք բառ, երեք գիւտ՝ զուար[ափակ], [վատ]շուէր եւ նուէր: Ագաթանգեղի զուար[ափակ քաղաքորմի] բառը համեմատում է zbar բառի հետ: Որպէս թէ zbar նշանակում է 'ափ, եզր', ուրեմն զուարափակ առել է 'եզրափակ':

Մխիթարեան հայրերը կարծել են, որ զուարափակի մէջ զուար-ակ բառն է, ուրեմն քաղաքորմը զուարակներ փակելու համար էր: Ցայժմ էլ ժողովուրդը օտար բառով ղալա (قلع: արմատակից քաղաք-ին) է կոչում ընական թէ արհեստական շրջափակ կայանները, որ յատկացրած են կենդանիների հանգստեան եւ բացօթեայ գիշերելուն: Հնում սա կոչւում էր քաղաքորմ:

Գ. Ֆնտգլեանը չէ հաւանում այս մեկնութիւնը, գուցէ եւ իրաւամբ: Կարող է պատահել, որ զուար կապ չունենայ զուարակի հետ: Ուզում է տեսնել այստեղ իրանական zbar. Տարաբախտաբար ինքը zbar պէտք ունի լուսաբանութեան աւելի քան զուարը: Ջակսոն Վենդիդադի 19, 4 յիշած zbar թարգմանում է 'եզր' ենթադրութեամբ, որովհետեւ խօսքը գետի մասին է: Բառի նշանակութիւնը եւ ստուգաբանութիւնը անյայտ է: Լեզուական խնդիրներում աւելի մեծ հեղինակութիւն քան ամերիկացի պատկառելի գիտնականը, գերման Բարթոլոմէ կարծում է, որ zbarah նշանակում է բլուր, բարձրաւանդակ: Վենդիդադի պահլաւ թարգմանութիւնը ոչ մի նպաստ չի բերում բառի լուծման, zbarah- թողնելով անփոփոխ zbar. սանսկրիտ թարգմանութիւնը zbarah-ի դէմ ունի padah- 'ոտն', երեւի, սարքառի մտքով:

Ջակսոնի եւ Բարթոլոմէի պայմանական, եւ տարբեր ըմբռնումները 'ափ' եւ 'բլուր' կարելի էր հաշտեցնել, ինչպէս կարծում եմ անձամբ, յիշելով գերման Berg 'լեառն', որ անցնել է սլաւ լեզուները, որպէս brēg 'ափ', սկզբնապէս 'սարոտ' յետոյ 'ափ': Մեկնութիւնս հնարաւոր է, եթէ zbarah-ի ստուգաբանական իմաստը որ եւ է նեցուկ տար յիշեալ ենթադրական թարգմանութիւններին: Նոյն Բարթոլոմէ համեմատում է zbar- սանսկրիտ hvarah- 'կորութիւն' բառի հետ: Աւեստայում zbar- նշանակում է 'ծուռումուռ գնալ' եւ գործ է ածւում դեւերի քայլուածքը բնորոշելու համար, մինչ բարի ոգիներին է վերապահում սովորական tak- 'գնալ, վազել' բայը: Եթէ հնարաւոր է 'կորութեան, ծռութեան' գաղափարից հանել 'լեառն, բլուր' նշանակութիւնը, կարելի է ընդունելի համարել տուած ստուգաբանութիւնը:

Յամենայն դէպս zbar մնում է բաւականին մութ: Հայերէն զուար եւս մութ է, գոնէ Գ. Ֆնտգլեանի համար: Պարզ է, որ երկու կոյրեր չեն կարող առաջնորդել դէպի լոյս: Մանաւանդ որ աւեստ. zbarah, որ պահլաւերէնում մնում է zbar հայերէնում ի դէպ փոխառութեան պիտի հնչէր եւս *զբառ:

Նպատակից դուրս է որեւէ ստուգաբանութիւն առաջարկել: Կ'ուզէի միայն ակնարկել, որ զուարափակը մեկնութիւն է քաղաքորմ-ի, եւ ուրեմն վերջինս սովորական ղալա չէր ցած պատնէշով, այլ խոտամբար՝ բարձրապատ: Ներելի է զուար-ի մէջ տեսնել պարթեւ vār. աւեստ. vāra եւ պարսկ. bār բառը, որ նշանակում է 'պատ': Հայերէն՝ պատուար ունի իր վերջին մասում նոյն vār<*pati-vāra (prati). սկզբի զ-ն թւում է նախդիրի մնացորդ է, հաւանօրէն, uz-, որ նկատւում է զգոյշ բառում < աւեստ uz-gaušo, 'ականջները ցից', այլ եւ աւեստ. uz-vaeδa-: Զուար <*uz-vāra, ուրեմն նշանակելու է 'պատ՝ վեր բարձրացող', զուարափակ՝ որմափակ: Կրկնում եմ, ենթադրութիւն է այս լոկ:

Անյաջող է եւ Գ. Ֆնտգլեանի երկրորդ համեմատութիւնը: Հայերէն -շուէր չի կարող համաձայնել օտար ոչ իսկ իրանական svar (°) -ին: Վատշուէր ամբողջովին փոխառութիւն է եւ ենթադրում է պարթեւ *vatišvēr. Անտեղի է գէշ օրինակը, որպէս թէ գա(ր)շ-ից: Պրոֆ. Մառը շատոնց արած է այս համեմատութիւնը, հանելով գէշ-ը *գայշ-ից միջնորդ ձեւ գէշ-ի եւ գարշ-ի: Բնաւ չեմ կարծում այստեղ «վերյուշումի» հետքեր որոնել, այլ հասարակ զուգադիպում, որ հնարաւոր է, չնայելով որ անձամբ գէշ գարշի նոյնացումը համոզիչ չեմ գտնում:

Երրորդ գիւտը աւելի հանդիսաւոր է: Գ. Ֆնտգլեան պէտք է տեսել յայտնել այս մասին ամերիկացի իրանագէտի, Պրոֆ. Ջակսոնին, «որին շատ գոհունակութիւն է պատճառեր»: Արդ չնայելով Ջակսոնի

հաւանութեան «պահլաւիկ nvar չէ կարող նոյնանալ նուէր-ին հետ: Բարեբախտաբար նուէր այն փոխառութիւններից է, որի ստուգաբանութիւնը վաղուց եւ ճշգրտօրէն յայտնի է: Նուէր ծագում է պարթեւ nivēda պարսկ. nuvēd نوید, աւեստ. ni-vaēδa- (ni-vaedayemi բայի մէջ): nvar տեղ չունի այս շարքի մէջ:

Կասկածելի ենք համարում անգամ nvar գոյութիւնը. Դինկարտի՝ aspānvar-i Višaspu- մէջ aspānvar վերլուծել՝ aspā-nvar անհեթեթութիւն է, aspā-ի երկար ā կը մնայ առեղծուածային: Հասկանալի է, ինչո՞ւ Ուեստը կարդում է aspān-pur, կամ aspāχur, որպէս զի aspā-ի ā անուշադիր չթողնէ:

Պահլաւ գրերը պատեհութիւն են տալիս այլ եւ այլ կերպ կարդալու: Եթէ մէկը ուզում է -n տառը տեսնել եւ կարդալ aspānvar, ինչպէս Պ. Ցնոդլեանը, այն ժամանակ պիտի բառը լուծել aspān եւ var եւ ոչ երբեք aspā եւ nvar (aspān սեռական հոլովն է յոգնակի, իսկ aspā կը լինի անհասկանալի ձեւ): Aspāxur քերականօրէն ճիշտ ընթերցում է aspa+āxur=aspāxuri, նոյնպէս քերականօրէն ճիշդ aspān-pur 'ձիոց քաղաք', բայց aspā-nvar անհեթեթ է քերականօրէն:

Պ. Ցնոդլեանին գայթակղել է իմաստը: «Ասպանուէր» կարդալով, կարելի է 'ձիազոհ' հասկանալ եւ ուրեմն պարզել մութ պարբերութիւնը այն մտքով որ Զրադաշտին հանդիպելիս Վշտասպ ձիու զոհ էր մատուցանում: Արդէն պարոնը այս միտքը չընջացել է գիտնական Ջաքսոնին եւ սա «յայտնել է իր գոհունակութիւնը այս լուծումին»: Այսպէս է, որ չար մտքերը պատրում են երբեմն առաքինի մարդկանց:

«Դենկարտ» պահլաւ գիրքը յօրինուած է Թ. դարում Ք. յ. եւ այլ նպատակ չունի քան մեկնել բացատրել Աւեստայի սրբազան գիրքը: Աւեստայում եւ ոչ մի նշան ձիազոհի, ինքը ձին գրեթէ պաշտելի է, մանաւանդ սպիտակ ձին, որը ինչպէս լուսոյ արտայայտութիւն կապակից է աստուածներին: Հաւանական չէ, որ «Դենկարտը» յանկարծ մտաբերէր դարերով մոռացուած, վերացուած ձիազոհը, եւ յիշէր հակառակ Աւեստայի եւ այն էլ մի անգամ որպէս ἅπαξ λεγόμενα.

Փարիզ: ՊՐՈՖ. Ն. ԱԴՈՆՑ

# ԼԵԶՈՒԱԲԱՆԱԿԱՆ

## ՀԱՐԱԶԱՏ

Հարազատ բառը ես տրոհում եմ իբր հար-ա-զատ, որով ստանում ենք մի բարդ բառ: Այս բառի երկրորդ բաղադրիչը -զատ ես կցում եմ պրսկ. زاده արմատի հետ, որ բարդութեանց մէջ մտնում է իբր زاده. այսպէս شاهزاده, շահածին, շահի զաւակ, շահի զարմ, շահազն: Մեր “զատ„ արմատը ես չեմ համարում փոխառութիւն, այլ բնիկ հայ արմատ: Մենք ունենք զատ, որից զատել, որ այդ արմատի սաստկական ձեւն եմ համարում. զատ նշանակում է կտրուած, անջատ, բաժան: Նա իր մէջ ունի ծնունդ գաղափարի նախաւոր իմաստը, որ հին մարդու աչքին այլ բան չէր, քան զաւակի անջատումը, զատումը ծնողի մարմնից:

Բայց “ի կամեցողն լինել Արամազդ„՝ այդ արմատը կարելի է եւ փոխառութիւն համարել: Այս դէպքում հարազատ բառն իր կազմով կը դառնայ խառնածին, այսինքն հայ եւ օտար արմատների բարդում: Այդպիսի բառեր մեր լեզուի մէջ կան: Դրանցից մէկն է կարծում եմ բարգաւաճել բառը, որի երկրորդ բաղադրիչը -աճել ծանօթ է, իսկ առաջին բաղադրիչը բարգաւ- ես համարում եմ պրսկ. برگ բառի գործիական հոլովը՝ իբր բարգ, *բարգի, բարգաւ: “Բարգ„ նշանակում է տերեւ եւ ուրեմն բարգաւաճել՝ նշանակում է տերեւով աճել, տերեւակալել: Այս բառի բուն իմաստը զուգահեռ է մեր ժողովրդական օրհնանքի բանաձեւին, որ իր պատկերները բուսական աշխարհից է առնում: “Ծլե՛ս, ծա՛ղկես, զօրանաս„ ասում է հայ պապն իր թոռանը: Նա կարող էր ասել նաեւ. “բարգաւաճես„, այսինքն տերեւով աճես, տերեւակալես: “Հարազատ„ բառի երկու բաղադրիչները բնիկ համարենք թէ նրանցից մէկը եկամուտ՝ դրանով մեր տրոհումը չի փոխուի. նա կը մնայ հար-ա-զատ, որի երկրորդ բաղադրիչը նշանակում է ծին, զաւակ, զարմ, ազն:

Ինչ վերաբերում է առաջին բաղադրիչին, որ է հար՝ ես դա համարում եմ հայր բառի ձեւափոխութիւնը եւ ուրեմն հարազատ կարծում եմ նշանակում է հայրածին, հօր ծնած, հօր զաւակ:

Այս կէտը մանր քննութեան կարիք ունի: “Հայր„ բառից ածանցուած բառերը մեր լեզւում հետեւում են բառակազմութեան երկու